Պրոլետարներ բոլոր յերկրների, միացեք!

ՀԿ(բ)Կ Կենտկոմի կուլտ. պրոպագանդայի
յեվ ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 5 (12)

Պրոլետարներ բոլոր յերկրների, միացե՛ք

ՀԿ (բ) Կ Կենտկոմի կուլտ. պրոպագանդայի
յեվ ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ
# ԲԼՈԿՆՈՏ

## № 5 (12)

ՀԿ(բ)ԿԿԿ հրատարակչություն—«Սով. Հայաստան»
ՅԵՐԵՎԱՆ — 1937

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագիր՝ ԳԻՆՈ ՇԱՂԳԱՄՅԱՆ
Պատ. քարտուղար՝ Գ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Սրբ.՝ Մ. ՍՈՒՐՅԱՆ և Մ. ԳՅՈՒՐԳՅԱՆ

Հրատարակություն № 8, պատվեր № 329
ԳԼԱՎԼԻՏԻ ԼԻԱԶՈՐ Ն.—№ 1245
Տիրաժ 10.917

ՊԵՏՀՐԱՏԻ ՏՊԱՐԱՆ, ՅԵՐԵՎԱՆ

# ԿԻՆԸ ԽՍՀՄ-ՈՒՄ ՅԵՎ ՍՏԱԼԻՆՅԱՆ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ

*Մարդկային պատմության մեջ վերաբերմունքը դեպի կինը, դեպի նրա իրավահավասարությունը, դեպի նրա լիակատար ազատագրման պայմանների ստեղծումը հանդիսացել է և հանդիսանում է այն սահմանային սյուներից մեկը, վորը բաժանում է մի կողմից ռեակցիայի, շահագործման, դեպի կնոջը ցուցաբերվող զազրելի ֆիլիստերային վերաբերմունքի աշխարհայացքը և մյուս կողմից այն մարդկանց աշխարհայացքը, վորոնք անկեղծորեն, խորապես, հետևողականորեն դընում են մարդկային հասարակության արմատական վերակառուցման հարցը։*

Ճորտատերերը, ֆեոդալները, փաշխաները՝ բոլոր ռեակցիոներները, ձգտում են ամրացնել անհավասարությունը, հետ շպրտել կնոջը, վորը փշրում է մարդկային արժանապատվությունը, ստորացնող, նրան վոչ իրավահավասար վիճակի մեջ դնող որենքների, նախապաշարումների, սովորույթների կապանքները:

Յեվ, ընդհակառակը՝ բոլոր ժամանակների ու ժողովուրդների մեծ մտածողները միշտ գիտակցել են, վոր չի կարելի ստեղծել մարդկային ազատ հասարակություն, յեթե նրանում կինն իրավահավասար չլինի:

Ենգելսն արտահայտել եր այն միտքը, վոր նոր հասարակության ոգու բարձրությունը պետք է չափվի նրանով, թե կինն այդ հասարակության մեջ լիակատար իրավահավասարություն ստացե՞լ է արդյոք հասարակական կյանքի բոլոր ասպարեզներում: Ենգելսն իր «Անտի-Դյուրինգ» աշխատության մեջ հետեվյալն է գրել այդ հարցի նկատմամբ Ֆուրյեի ունեցած հայացքների մասին

«Նա ուժեղ և դիպուկ գծերով նկա-



րագրում է սպեկուլյատիվ խարդախությունները ու մանր — չարչիական այն վոգին, վորը տիրապետել է հեղափոխական շրջանի ֆրանսիական առեվտրին: Ավելի ևս հաջող է նրա կողմից բուրժուական հասարակության մեջ սեռերի ունեցած փոխհարաբերության և նրանում կնոջ ունեցած դրության յերգիծական նկարագրումը: Առաջինը նրան է պատկանում այն միտքը, թե ազատության այն աստիճանը, վորին հասել է տվյալ հասարակությունը, պետք է չափվի այդ հասարակության մեջ կնոջ ունեցած ավելի կամ պակաս ազատությամբ*):

«Պրոլետարիատը չի կարող լիակատար ազատություն հանել, առանց կնոջ համար լիակատար ազատություն նվաճելու»**). — սովորեցրել է Լենինը: Մեր կուսակցության ծրագիրը համակված է նոր սոցիալիստական վերաբերմունքով դեպի կինը,

---

*) Ենգելս: «Անտի-Դյուրինգ»:

**) Վ. Ի. Լենին:— Գրվածքներ, հատոր XXV, եջ 41.

որպես սոցիալիստական հասարակության իրավահավասար անդամի:

Սակայն, որպեսզի կինը դառնա հասարակության իրավահավասար անդամը, հարկավոր էր անդուլ հոգատարություն ցուցաբերել, որ կինն ազատվի տնային տնտեսության ստրկությունից: Հարկավոր էր նպաստել կնոջ տնտեսական ինքնուրույնությանը, ձգտելով այդ բազայի վրա նրա կուլտուրական ու քաղաքական աճմանը: Լենինը և Ստալինը ծավալեցին մի ամբողջ ծրագիր, որի իրականացումը խորհրդային կնոջ համար ապահովեց լիարժեք ստեղծարար աշխատանքի զուգակցումը բերկրալից, յերջանիկ մայրության հետ:

«Աշխատավոր կանանց քաղաքական լուսավորությունը, այժմ, յերբ իշխանությունն անցել է բանվորների ու գյուղացիների ձեռքը, առաջնակարգ նշանակություն ունի»,— գրել է ընկեր Ստալինն իր «Բանվորուհիների ու գեղջկուհիների առաջին համագումարի 5-րդ տարեդարձի առթիվ» հոդվածում՝

«Բանվորուհիներն ու գեղջկուհիները բանվորներին և գյուղացիներին



հավասար ազատ քաղաքացիներ են: Նրանք ընտրում են խորհուրդները, մեր կոոպերատիվները, նրանք կարող են ընտրվել խորհուրդների, կոոպերատիվների մեջ: Բանվորուհիներն ու գեղջկուհիները կարող են բարելավել մեր խորհուրդներն ու կոոպերատիվները, ամրացնել ու զարգացնել դրանք, յեթե նրանք քաղաքանապես լուսավորված են: Բանվորուհիներն ու գեղջկուհիները կարող են թուլացնել և քայքայել դրանք, յեթե նրանք խավար ու տգետ են:

Վերջապես բանվորուհիներն ու գեղջկուհիները հանդիսանում են մեր յերկրի ապագան ներկայացնող մեր յերիտասարդության մայրերը, դաստիարակները: Նրանք կարող են խեղել յերեխայի հոգին, կամ տալ մեզ վոգով առողջ մի յերիտասարդություն, վորը կարողանա առաջ շարժել մեր յերկիրը...»[1]:

---

[1] Ի. Ստալին:— «Բանվորուհիների և գեղջկուհիների առաջին համագումարի շուրջը», «Կոմունիստկա» ժուրնալի 1923 թ. № 11:

Մեր յերկրում միլիոնավոր կանայք զգում են ընկեր Ստալինի մեծ հոգատարությունը, որը կարողացավ նրանց գիտակցության մեջ, նրանց տրամադրություններում գտնել և հարկադրել հնչել այնպիսի լարեր, որ կանանց յեռանդն ու մասնակցությունը սոցիալիստական տնտեսության, սոցիալիստական կառուցմանը, տասնապատկվեց:

Ահա թե ինչու խորհրդային կինը, ստանալով ԽՍՀՄ-ի ստալինյան Սահմանադրությունը, սրտառուչ, հուզող խոսքերով իր անհուն շնորհակալությունը, սերն ու անձնուրաց նվիրվածությունն է արտահայտում իր հայրենիքին, իր կուսակցությանը, իր առաջնորդին, ուսուցիչ, բարեկամ, հայր Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինին:

* * *

Արդեն անցել է յերեք ամիս այն օրից, յերբ մեծ, բազմազգ խորհրդային ժողովուրդը ստացավ Նոր Ստալինյան Սահմանադրությունը: Մեր ազատ յերկրի ուժի, սոցիալիստական դեմոկրատիայի ծաղկման համար զգացվող բերկրանքի, հպարտության ալիքը գնալով ավելի յե աճում,



ափվում է մեր հրաշալի հայրենիքի անծայրածիր տարածություններով ու նրա սահմաններից դուրս և այնտեղ միլիոնավոր աշխատավորների համակրանքն ու սերն է կրկնապատկում դեպի խորհրդային յերկիրը:

Սակայն Նոր Սահմանադրության նշանակությունը կարելի յե ճիշտ ու խորապես գնահատել, հասկանալ նրա նշանակությունը միմիայն այն ժամանակ, յերբ մենք համեմատենք կնոջ այն դրությունը, որը նա նվաճել է ԽՍՀՄ-ի մեջ և որը արձանագրված է Ստալինյան Սահմանադրության մեջ, կնոջ այն դրության հետ, որին ամրացված է օրենքներով կապիտալիստական աշխարհում, մանավանդ ֆաշիստական յերկրներում:

ԽՍՀՄ-ի Սահմանադրության 137-րդ հոդվածում գրի յե առնված կնոջ և տղամարդու լիակատար անվերապահ իրավական հավասարությունը՝ «Կանայք ընտրելու և ընտրվելու իրավունքից օգտվում են տղամարդկանց հետ հավասարապես»:

Չի կարելի առանց հուզվելու կարդալ այս խոսքերը, յերբ մի հայացք ես գցում այն ուղու վրա, որին անցել է խորհրդա-

յին կինը, պայքար մղելով այդ մեծ իրավունքի համար, իր արժանապատվության համար, հավասարների մեջ հավասար լինելու համար:

Սովետական Ստալինյան Սահմանադրությունը չի սահմանափակվում նրանով, որ նա ապահովում է կնոջ իրավական հավասարությունը տղամարդու հետ, Սահմանադրության 122-րդ հոդվածն ամուր, անսասան նյութական հիմք է ստեղծում այդ իրավական հավասարության համար:

Այդ հոդվածն ամբողջ մարդկության առջև հռչակում է՝

«Կնոջը ՍՍՀՄ-ում տղամարդուն համահավասար իրավունքներ են տրվում տնտեսական, պետական, կուլտուրական ու հասարակական-քաղաքական կյանքի բոլոր բնագավառներում:

Կանանց այդ իրավունքների իրագործման հնարավորությունն ապահովվում է կնոջը տղամարդուն հավասար իրավունք տալով աշխատանքի, աշխատանքի վարձատրության, հանգստի, սոցիալական ապահովագրության ու կրթության ասպարեզում, մոր ու մանկան շահերի պետական պաշտպանությամբ, կնոջը հղիության ժա-



մանակ արձակուրդ տալով՝ պահպանելով աշխատավարձը, ծննդատների, մանկամսուրների և մանկապարտեզների լայն ցանցով»:

Այդպես չէ կնոջ դրությունը կապիտալիստական աշխարհում:

Կապիտալիզմը չկարողացավ նույնիսկ ձևական, իրավական իրավահավասարություն տալ կնոջը, նա պահպանում է այն օրենքները, որով կինն անտեսված է իրավական, սոցիալական ասպարեզներում և որոնք կնոջը ստորացուցիչ կացության մեջ են դնում նույնիսկ իր ամուսնու, յերեխաների հանդեպ:

Ֆրանսիայում կինը յենթակա յե տղամարդու իշխանությանը: Նրա լիիշխան տերն է հանդիսանում հայրը, իսկ յերբ նա ամուսնացել է՝ ամուսինը: Ամուսնացած կինը կորցնում է նույնիսկ այն իրավունքները, որոնք վայելել է նա ամուսնական պայմանագիր կնքելուց առաջ. հարսանիքի օրը քաղաքագլուխը հանդիսավոր կերպով կարդում է քաղաքացիական օրենսգրքի 213 և 214-րդ հոդվածները, որով սրբագործվում է ամուսնու իշխանությունը կնոջ վրա:

Ֆրանսիայի քաղաքացիական օրենսգրքի

213-րդ հոդվածն ասում է՝ «Ամուսինը պարտավոր է հովանավորություն ապահովել իր կնոջ համար, իսկ կինը պարտավոր է ենթարկվել իր ամուսնուն»: Նույն այդ քաղաքացիական օրենսգրքի 214-րդ հոդվածը մատնանշում է, թե կինը պարտավոր է ապրել իր ամուսնու հետ միևնույն հարկի տակ և հետևել նրան ամենուրեք, վորտեղ նա հարկավոր համարի բնակվել: Այդ օրենքների ուժով ամուսինը կարող է բռնությամբ հարկադրել իր կնոջը՝ վերադառնալ իր ամուսնու բնակարանը: Ճիշտ է, կնոջն իրավունք է վերապահվում միջնորդել ապահարզանի համար: Սակայն մի՞թե այն երկրում, վորտեղ օրենքով սահմանված է կնոջ իրավազրկությունը, նա կարող է պաշտպանություն գտնել դատարանում: Ֆրանսիայի քաղաքացիական օրենսգրքի 215-րդ հոդվածը պահպանում է կանգնած ամուսնու շահերին՝ «Կինը չի կարող դիմել դատարանին՝ առանց ամուսնու թույլտվության»:

Թույլ է տրվում միայն մի բացառություն՝ դեմոկրատիկ Ֆրանսիայում կնոջը դատում են առանց ամուսնու թույլտվության, խախտելով նույնիսկ քաղաքացի-



կան օրենսգիրքը, եթե նա հանդես է գալիս տիրող քաղաքական ռեժիմի դեմ: Իսկ մի երկրում, վորտեղ տիրողը հանդիսանում են կապիտալիստը, կալվածատերը, ռանտյեն, վորոնք իրենց ձեռքում պահում են ճնշման ու խաբեբայության բոլոր գործիքները՝ դատարանը, վոստիկանությունը, բանակը, եկեղեցին, դպրոցը, մամուլը, ռադիոն, օրենքի այդ բացառիկությունն օգտագործում են աշխատավորուհիների դեմ, բանվոր դասակարգի դեմ:

Ֆրանսիայի դեմոկրատիկ հանրապետության այդ օրենքները, վորոնք կնոջը դնում են անիրավահավասար, մարդկային արժանապատվությունը վիրավորող կացության մեջ, վոչնչով չեն տարբերվում ցարական ինքնակալության օրենքներից, ըստ վորոնց կինը նույնպես իր ամուսնու ստրկուհին էր:

Ցարական օրենքների ժողովածվի 107-րդ հոդվածն ասում էր՝

«Կինը պարտավոր է հնազանդվել իր ամուսնուն, վորպես ընտանիքի գլխավորին, սեր, հարգանք և անսահման հնազանդություն տածել դեպի նա, ամեն կերպ սիրաշահել և մտերմու-

թյուն ցուցաբերել նրան, վորպես տան անտեսուհի»:

Ցարական օրենքների ժողովածուի 107-րդ հոդվածն այնպես, ինչպես և ֆրանսիական օրենքները, հռչակում է՝

«Ամուսինները պարտավոր են միասին ապրել, ուստի և խստիվ արգելվում են այն բոլոր գործողությունները, վորոնք հանգում են ամուսինների ինքնագլուխ անջատմանը: Ամուսինը վերաբնակվելիս, ծառայության մտնելիս կամ նրա բնակավայրի այլ փոփոխության դեպքում, կինը պարտավոր է հետևել նրան»:

Կինն ամուսնուց հեռանալու դեպքում ամուսինը կարող էր, վոստիկանության միջոցով, պահանջել, վոր կինը ետապով իր մոտ բերվի: Ցարական օրենքները լիակատար իրավազրկության էյին դատապարտում կնոջը:

Ընկեր Ստալինը, ճակնդեղի դաշտերի հարվածային կոլտնտեսուհիների ընդունելության ժամանակ, այսպես ասաց կնոջ այդ ծանր անցյալի մասին.

«Արդարև, յեթե մտածենք, թե ինչ էյին ներկայացնում կանայք առաջ, հին



ժամանակ: Քանի կինը դեռ աղջիկ էր, նա համարվում էր աշխատավորներից այսպես ասած վերջինը: Նա աշխատում էր հոր համար, աշխատում էր առանց ձեռքերը ծալելու և հայրը դեռ կշտամբում էր՝ «Յես քեզ կերակրում եմ»: Յերբ նա մարդու յեր գնում, աշխատում էր ամուսնու համար, աշխատում էր այնպես, ինչպես հարկադրում էր նրան աշխատել ամուսինը. և հենց ամուսինն էլ դարձյալ կշտամբում էր՝ «Յես քեզ կերակրում եմ»:

Կինը գյուղում վերջինն էր աշխատավորներից: Աշխատանքը մի նզովք էր:

Մեծ սոցիալիստական պետության կանայք կարող են թեթևացած շունչ քաշել, անդարձ անցյալի մեջ ընկղմեց կնոջը ցուցաբերվող այդ բարբարոսական, ֆեոդալական-ճորտատիրական, շահագործական վերաբերմունքը: ԽՍՀՄ-ի բանվորուհիներն ու կոլտնտեսուհիները հպարտ են նրանով, վոր Խորհրդային յերկրում օրինականացված է նրանց ազատությունը, մինչև այժմ չտեսնված բարձրության է հասցված նրանց մարդկային արժանապատվությունը, ձեռք

է բերված կնոջ լիակատար ազատագրումը։

Լենինը գրել է՝

«Ոչ մի դեմոկրատիկ կուսակցություն աշխարհումս, ամենից առաջավոր բուրժուական ոչ մի հանրապետության մեջ, տասնյակ տարիների ընթացքում, այդ տեսակետից չի արել անգամ հարյուրերորդ մասն այն բանի, վորն արել ենք մենք մեր իշխանության առաջին իսկ տարին։ Մենք բառիս բուն իմաստով քարը քարի վրա չենք թողել կնոջ անիրավահավասարության, ամուսնալուծությունը դժվարացնող և այն պայմանավորող ստոր ձևականությունների, արտամուսնային յերեխաները չճանաչելու, նրանց հայրերին փնտրելու և այլ ստոր օրենքներից, օրենքներ, վորոնց մնացորդները բազմաթիվ են բոլոր քաղաքակիրթ յերկրներում՝ ի խայտառակություն բուրժուազիայի և կապիտալիզմի»[1]։

Դեմոկրատիկ Անգլիայում, հիմնականում միայն 1919 թվականին վերջացավ կնոջ պա-

[1] Վ. Ի. Լենին։— Գրվածքներ, հատոր XXIV։



ժան պայքարը հանուն իր իրավահավասարության. 1918 թվականի փետրվարի 6-ին անգլիացի կանայք, սկսած յերեսուն տարեկան հասակից, ձայնի իրավունք ստացան։ Յեվ միմիայն 1929 թվականին Անգլիայում կանայք իրավունք ստացան 21 տարեկան հասակից տղամարդկանց հետ հավասար քվեարկելու։

Անգլիացի կանանց համար անհրաժեշտ յեղավ ավելի քան կես դար կատաղի պայքար մղել, վորպեսզի իրավունք նվաճեն տղամարդկանց հետ հավասար հիմունքներով հանդես գալու քաղաքական ասպարեզ։

Միմիայն Ռուսաստանի սոցիալիստական Մեծ հեղափոխության հաղթանակի ազդեցությամբ, անգլիական լորդերը տեղի տվին պրոլետարական լայն մասսաների գրոհին և ընտրական իրավունքներ «շնորհեցին» կանանց, սակայն անսասան թողնելով ամուսնու իշխանությունը կնոջ վրա և այն օրենքները, վորոնց համաձայն ամուսնուն իրավունք է տրվում ֆիզիկապես պատժել կնոջը (անգլիական դատարանները մինչև այժմ էլ ղեկավարվում են այդ օրենքներով)։

Սրանք են այն անիրավահավասար դրու-

թյան օրինակները, որի մեջ գտնվում է կինն ամենադեմոկրատիկ յերկրներում: Մենք չխոսեցինք այնպիսի յերկրների մասին, ինչպիսին է Ճապոնիան, վորտեղ կնոջ իրավունքներն ու արժանապատվությունը վոտնահարված են այն աստիճան, վոր ամուսինն իրավունք ունի վաճառել կնոջը, իսկ հայրն իրավունք ունի վաճառել աղջկանն անառականոցին, և վորտեղ տիրում է հետևյալ խոսքերով արտահայտված բարոյականությունը՝ «Կնոջ ամբողջ կյանքի մեծ պարտականությունն է՝ հնազանդությունը: Մանկության հասակում հնազանդվիր հորդ, ամուսնության շրջանում՝ ամուսնուդ, ծերության օրերին՝ վորդուդ»:

«Հանուն ամեն մի իրավունքի սկզբնական աղբյուր՝ ամենազոր աստծու, ստանում է ավստրիական ժողովուրդն իր քրիստոնեական գերմանական դաշնակից պետության համար այս սահմանադրությունը՝ դասային հիմքի վրա»— այսպիսի խոսքերով է սկսվում ավստրիական ֆաշիզմի սահմանադրությունը, վորը հռչակվեց 1934 թ. մայիսի 1-ին և վորը բոլորովին բացառում է կնոջը հասարակական կյանքից:

Ավստրիական սահմանադրությունն ասում



է՝ «դաշնակցության բոլոր քաղաքացիները հավասար են օրենքի առջև», բայց հենց այստեղ էլ հետևյալ վերապահումն է անում՝ «Օրենքները կարող են վոչ հավասար վերաբերվել նրանց միայն այն չափով, ինչ չափով վոր դա արդարանում է ռեալ հիմքերով» (հոդված 16-րդ): Տղամարդու և կնոջ միջև, հարուստի և չքավորի միջև փաստացի անհավասարությունը բղխում է արդեն միայն այս ձևակերպումից: Գործնականում միատեսակ աշխատանքի համար կանանց ստացած աշխատավարձը 40 տոկոսով ցածր է, քան տղամարդկանց աշխատավարձը: Կնոջը տրվող գործազրկության նպաստն ավելի յե կրճատվում, քան տղամարդունը: Ձեռնարկատերերն ու կառավարությունն աշխատում են «ընտանիքի պաշտպանության» լոզունգով դուրս մղել կնոջն արտադրության ճյուղերի մեծ մասից, փոխարինելով կնոջ աշխատանքը տղամարդու նույնպես վատ վարձատրվող աշխատանքով:

«Հանրային պաշտոնները հավասարապես մատչելի յեն հայրենիքին հավատարիմ բոլոր դաշնակցային քաղաքացիներին, վորոնք համապատասխանում են առաջադրված պա-

հանջներին», — ասում է Ավստրիայի սահմանադրության 16-րդ հոդվածը: Սակայն հակառակ դրան, կառավարությունը հրատարակեց այսպես կոչված «Երկու վաստակողների օրենքը», վորի համաձայն ընտանիքում վաստակել կարող է միայն մեկը: Գործնականորեն այդ նշանակում է ամուսնացած կանանց արձակումը պետական ծառայությունից: Այդ օրենքն առանձնապես ծանր է անդրադառնում ամուսնացած ուսուցչուհիների վրա: Կանանց ընդունելությունը բարձրագույն դպրոցները սահմանափակված է: Աշխատավոր կանանց համար ընդհանրապես անմատչելի է բարձրագույն դպրոցը:

Ավստրիայում օրենքը արձակուրդ է նախատեսում հղիության առթիվ, սակայն գործնականում այդ օրենքը, ինչպես և Գերմանիայում, բացահայտ խաբեբայություն է՝ ամեն մի ձեռնարկատեր անխղճորեն դուրս է վռնդում բանվորուհուն դեռ հղիության արձակուրդն սկսվելուց առաջ:

Օրենքով կնոջը չի կարելի փակել համակենտրոնացման ճամբարներում, բայց դրա փոխարեն հակաֆաշիստ կանանց պահում են վոստիկանական զզվելի բանտերում, ավե-



լի ծանր պայմաններում, քան համակենտրոնացման ճամբարների կալանավորները:

Այդպես ֆաշիստական Ավստրիայի սահմանադրությունը, մի յերկրի, վորն իրեն անվանում է «քրիստոնեական պետություն», կնոջը դատապարտում է այնպիսի ստրկալի իրավազրկության ու ստորացման, վորոնք կարելի յե համեմատել կնոջ միմիայն ցարական Ռուսաստանում և միջնադարի մըռայլ ժամանակներում ունեցած դրության հետ:

Միմիայն մեր Խորհրդային յերկրում մարդկային պատմության մեջ առաջին անգամ կինն իրավունք, պատիվ, արժանապատվություն ձեռք բերեց:

Խորհրդային Սահմանադրության հոդվածները, վորոնք հաստատում են կնոջ իրավահավասար դրությունը սոցիալիստական հասարակության մեջ, թաղում են սոցիալ-դեմոկրատական ու բուրժուական դըրչակների այն ռեակցիոն չաղակրատությունը, թե բուրժուական դեմոկրատիան ավելի բարձր է այն բանից, ինչ վոր կարող է տալ խորհրդային դեմոկրատիան:

Լենինը դեռ 1919 թվականին ասպարիչ պա-

տասխան տվեց այդ բոլոր ռեակցիոն շաղակրատներին, վորոնք զգեստավորվում են, պճնվում են «ազատության ու հավասարության ճոռոմ ֆրազների, հանդիսավոր խոսքերի, ճամարտակ խոստումների, բարձր լոզունգների պատմուճանով»՝

«Կնոջ դրությունն առանձնապես ակնառու կերպով բացատրում է բուրժուական և սոցիալիստական դեմոկրատիայի տարբերությունը, առանձնապես ակնառու կերպով պատասխանում է դրված հարցին:

Բուրժուական հանրապետության մեջ (այսինքն վորտեղ կա հողի, ֆաբրիկաների, գործարանների, ակցիաների և այլն մասնավոր սեփականություն) թեկուզ նա լինի ամենադեմոկրատիկ հանրապետություն, կնոջ դրությունը վոչ մի տեղ աշխարհում, վոչ մի ամենաառաջավոր յերկրում լիովին իրավահավասար չդարձավ: Յեվ այդ՝ չնայած այն բանին, վոր ֆրանսիական մեծ (բուրժուական-դեմոկրատիկ) հեղափոխությունից ի վեր անցել է ավելի քան մեկ և քառորդ դար:

Բուրժուական դեմոկրատիան խոսքով



հավասարություն և ազատություն է խոստանում: Իրականում մարդկային ցեղի կես մասին՝ կանանց վոչ մի՝ թեկուզ ամենաառաջավոր, բուրժուական հանրապետություն չտվեց վոչ լիակատար հավասարություն տղամարդու հետ օրենքով, վոչ ազատություն տղամարդու խնամակալությունից և ճնշումից»[1]:

Բուրժուական քաղաքագետները փորձում են թուլացնել Խորհրդային Սահմանադրության ուժն ու նշանակությունը, համեմատելով այն Ֆրանսիայի բուրժուական հեղափոխության «Մարդու և քաղաքացու իրավունքների դեկլարացիայի» հետ և այդ համեմատությունից յեզրակացություն են անում հօգուտ բուրժուական դեմոկրատիայի: Բայց մի՞թե կարելի յե մեր Ստալինյան Սահմանադրությունը, վորը հանդիսանում է վոչ միայն խորհրդային կնոջ՝ մարդու և քաղաքացու իրավունքների ճանաչումը, այլև կնոջը ցուցաբերվող սիրո ու հայրական հոգատարության արտահայտությու-

1 Վ. Ի. Լենին:— Գրվածքներ, հատոր XXIV:

նը, կարելի յե համեմատել «Մարդու և քաղաքացու իրավունքների դեկլարացիայի» հետ, վորի հեղինակները մոռացության են տվել ֆրանսիական ժողովրդի կես մասը՝ կանանց:

«Մարդու և քաղաքացու իրավունքների դեկլարացիան» համակված է այն հեղափոխության փառքով, վորով ֆրանսիական ժողովուրդը պատռեց ֆեոդալիզմի ու միապետության կապանքները: Սակայն այդ «Դեկլարացիայում» չկա մի խոսք, վորը խանգարեր Նապոլեոնի բարբարոսական կոդեքսը կազմելու, մի կոդեքս, վորը վոտնահարում եր կանանց իրավունքներն ու մարդկային արժանապատվությունը: Ֆրանսիայի դեմոկրատիկ հանրապետության հիսուն տարվա գոյությունը քիչ բանով փոխեց ֆրանսիական կնոջ դրությունը՝ նա մինչև այժմ ել զուրկ է ընտրական իրավունքներից և, դեմոկրատիկ հանրապետության որենքներով, հավասարեցվում է անչափահասներին, և ավելի վատ՝ խելագարներին ու հանցագործներին:

❋ ❋ ❋

Սակայն բուրժուական այն յերկրներում, վորտեղ կնոջ համար իրավական հավասա-



րություն է ապահովված տղամարդու հետ, և այն չափով, ինչ չափով վոր դա ապահովված է, նա տնտեսական բազա չունի իր հիմքում: Կապիտալիստական վոչ մի յերկրում կինը տղամարդու հետ հավասար վարձատրություն չի ստանում իր աշխատանքի համար: Վորպես կանոն, կապիտալիստական յերկրներում բանվորուհիների միջին աշխատավարձը կազմում է տղամարդ բանվորների աշխատավարձի կեսը: Այդ յերկրներից վոչ մեկում չկա մայրության պետական ապահովագրում: Կինը դրանցից վոչ մեկում չունի նաև տղամարդու հետ հավասար կրթություն ստանալու իրավունք: Վերջին ժամանակներս կնոջ իրավունքը սահմանափակվում է նույնիսկ պետական հիմնարկներում, այն է՝ փոստում, հեռագրատանը, յերկաթուղիներում պաշտոններ վարելու նկատմամբ: Առևտրական ու արդյունաբերական ձեռնարկություններում կանանց տրվում են միմիայն ամենից քիչ վարձատրվող պաշտոններ՝ սղագրուհիների, մեքենագրուհիների և այլ պաշտոններ:

Անգլիայում, համալսարանների մեծ մասի կանոնադրության համաձայն, կանանց տղամարդկանց հետ հավասար իրավունքներ

են տրված: Բայց Իրականում կինը համարյա զուրկ է այդ իրավունքներից: Այդ կարող է հաստատել, թեկուզ այն փաստը, որ Անգլիայի 11 համալսարաններում կին համարյա չկա: Նրանց կարելի չէ հանդիպել միմիայն կոլեջներում, այն էլ Անգլիայի համար աննշան թվով (ընդամենը 2156 կին):

Առանց բացառության եվրոպական բոլոր երկրներում մտավոր աշխատանքով զբաղված կանայք, որոնք հաճախ հսկայական զոհաբերությունների գնով դիպլոմ են ձեռք բերել, չեն կարող աշխատանք ստանալ: Ուսուցչուհիները հազարներով մնում են դպրոցների փակ դռների առջև և ավելացնում են գործազուրկների պահեստի բանակը:

Հոկտեմբերյան Մեծ Սոցիալիստական Հեղափոխությունը ջախջախիչ հարված հասցրեց կանանց անիրավահավասարությանը, վոչնչացրեց այդ անիրավահավասարության հիմքն իսկ՝ տնտեսական կախումը՝ տնտեսական անհավասարությունը: Խորհրդային Սահմանադրությունը կնոջ համար ապահովում է աշխատա՛քի իրավունք



և հավասար աշխատանքի համար հավասար վարձատրություն:

Ընկեր Ստալինը, ճակնդեղի դաշտերի հարվածային կոլտնտեսուհիների ընդունելության ժամանակ իր արտասանած ճառում, անդրադառնալով գեղջկուհու դրությանը, դրա մասին պարզորոշ, մտերմաբար ու հասկանալի կերպով ասաց՝

«Միմիայն կոլտնտեսային կյանքը կարող էր վոչնչացնել անհավասարությունը և վոտքի կանգնեցնել կնոջը: Այդ դուք ինքներդ լավ գիտեք: Կոլտնտեսությունը մտցրեց աշխօր: Իսկ ի՞նչ բան է աշխօրը: Աշխօրի առջև բոլորն էլ՝ և՛ տղամարդիկ, և՛ կանայք հավասար են: Ով ավելի աշխօր ստացավ, նա էլ ավելի վաստակեց: Այստեղ արդեն վոչ հայրը և վոչ էլ ամուսինը կարող է կշտամբել կնոջը, թե նա կերակրում է նրան: Այժմ կինը, յեթե նա աշխատում է և ունի աշխօրեր, ինքըն է իր տիրուհին»:

Խորհրդային կինն իրավունք ստացավ մտնելու հասարակական ու տնտեսական գործունեության ասպարեզը՝ սկսած գյուղական խորհրդի անդամից ու նախագա-

հից, կոլտնտեսային դաշտերի բրիգադավարից, գործարանի դիրեկտորից մինչև կառավարության անդամը՝ ժողկոմ, դիվանագիտական ներկայացուցիչ:

Կնոջը պատվավոր տեղ է հատկացված հանրային արտադրության մեջ: Մեր յերկիրը, կնոջ աշխատանքի կիրառման ծավալով, գերազանցեց աշխարհիս ամենախոշոր ինդուստրիալ յերկրներից: Մեր յերկրում աշխատանքի բանակի մի յերրորդ մասը կազմում են կանայք: Նրանք ընթանում են սոցիալիստական աշխատավորների առաջավոր շարքերում՝ ժողովրդական տնտեսության բոլոր ասպարեզներում: Նրանք կազմում են մետաղագործների ու մետաղաշինարարների 26 տոկոսը, քարածխի արդյունաբերության բոլոր բանվորների համարյա մի քառորդը:

Միլիոնավոր կանայք զբաղված են արտադրությունում, շինարարության մեջ, առևտրում, առողջապահության, լուսավորության մեջ և արվեստում:

Յեվ յեթե կապիտալիստական աշխարհում կանանց ներգրավումն արտադրության մեջ թելադրվում է նրանով, վոր կանանց աշխատանքն ավելի եժան է, քան



տղամարդու աշխատանքը, ավելի քիչ է կազմակերպված, ավելի հեշտ է յենթարկվում շահագործման, ապա մեր յերկրում կանանց առաջընթացը արտադրության մեջ նպատակ ունի՝ ապահովել կնոջ տնտեսական ինքնուրույնությունը, նրա ստեղծարար ուժերի լիակատար ծաղկումը:

Այն բոլոր կեղծ գիտական «ապացույցները», թե կինը չի կարող տեխնիկայի ու գիտության զանազան ճյուղերում աշխատել նույնքան լիարժեք, վորքան տղամարդը, հերքվում է այն փաստով, վոր Խորհրդային Միության մեջ տասնյակ հազարավոր կանայք գիտության և տեխնիկայի ասպարեզներում ընթանում են տղամարդկանց հետ համաքայլ, վոչ մի չափով հետ չմնալով նրանցից գիտական ստեղծագործության նոր ուղիներ հ..րթելու, նոր ասպարեզներ նվաճելու գործում:

Կուսակցության հսկայական աշխատանքը նոր կադրեր դաստիարակելու ուղղությամբ, սոցիալիստական շինարարության վիթխարի թափն ու ծավալն արդյունաբերության, գյուղատնտեսության մեջ, կուլտուրական ճակատում, մասսաների կուլտուրական պահանջների աճումը, իսկական խորը գիտության՝ պատմության մեջ չտես-

նըված ծավալը, վորն համակել է ԽՍՀՄ-ի 170 միլիոնից բաղկացած ամբողջ ժողովըրդին, քաղաքների վերակառուցումը, սոցիալ-կենցաղային հիմնարկների աճը—այս բոլորը մեծ բարձրության հասցրեց ինտելիգենցիայի նշանակությունը Խորհրդային Միության մեջ: Հին ինտելիգենցիայի տեղը, վորը տիեզերքի կենտրոն էր համարում իրեն, աճեց և անընդհատ աճում է նոր, խորհրդային ինտելիգենցիան:

Ի՞նչ տեղ է գրավում կինը դասատուների, բժիշկների, գիտական աշխատողների շարքերում: Տարրական դպրոցի ուսուցիչների մեջ կանանց տեսակարար կշիռը 1935 թվականին հասնում էր՝ քաղաքային դպրոցներում 90 տոկոսի և գյուղական դպրոցներում 68 տոկոսի: Բարձր դասարանների դասատուների մեջ կանանց համեմատական թիվը 1927–1935 թվականների շրջանում ավելացավ համարյա մեկ և կես անգամ՝ 43,4 տոկոսից հասավ 59,8 տոկոսի քաղաքներում և 28,3 տոկոսից 41,1 տոկոսի գյուղերում: 1935 թվականին ԲՈՒՀ-երի դասատուների ու ասիստենտների կազմում կար մոտ 2,2 տոկոս կին և դոցենտների մեջ՝ մոտ 11 տոկոս: Կանայք ավելի շոշափելի



մեծություն են ներկայացնում տեխնիկումների ու բանֆակների մանկավարժական կազմում, վորտեղ նրանք գրավում են դասատուական պաշտոնների մեկ յերրորդից մինչև կես մասը: Կանայք կազմում են տեխնիկումների դիրեկտորների 10 տոկոսը և բանֆակների դիրեկտորների 19 տոկոսը: 1935 թվականի սկզբներին ԽՍՀՄ-ի գիտահետազոտական հիմնարկներում կար ավելի քան 11 հազար գիտական աշխատող կին: Բժշկուհիների թիվը, համեմատած մինչհեղափոխական ժամանակվա հետ, բարձրացավ ավելի քան 20 անգամ՝ 1935 թվականին Միության մեջ կար 42 հազար բժշկուհի, մինչդեռ 1914 թվականին նրանց թիվը հասնում էր 2000-ի: Ավելի քան կես միլիոն կին սովորում է ԲՈՒՀ-երում ու տեխնիկումներում: Ինժեներա-տեխնիկական աշխատողների մեջ կանանց թիվն արդեն 1935 թվականին 66 հազարից ավելի յեր:

Ստախանովական բանվորուհիների, տրակտորիստուհիների, խորհտնտեսությունների կին դիրեկտորների, կոլտնտեսությունների նախագահուհիների, կին մանկավարժների, ինժեներների, բժիշկների, ողաչու-

ների, գիտության ու արվեստի գործիչների հսկայական և գնալով ավելացող բանակը վկայում է, վոր աշխատավոր կինն ա՛ճել է վիթխարի չափով, վոր իրականացել է մարդկության ամենախիզախ երազը՝ կանանց իրավահավասարության մասին:

Լենին-Ստալինի կուսակցությունը և լենինյան կոմերիտմիությունը դաստիարակել են և դաստիարակում են գիտակից, կոմունիզմին նվիրված, սոցիալիզմի առաջավոր կառուցող միլիոնավոր կանայք:

Ամբողջ երկիրը պատվում է այն կանանց, վորոնք իրենց հերոսական աշխատանքով, իրենց մարտական որինակով, ձգտելով աշխատանքի բարձր արտադրողականության՝ ինչպես սոցիալիստական արդյունաբերության մեջ, այնպես էլ կոլտնտեսային դաշտերում, արժանացել են հերոսուհիների անվան: Համաժողովրդական ստախանովյան շարժման մեջ կինը պատվավոր տեղ է գրավում: Նոգինի անվան Վիչուգյան գործարանի ջուլհակներ Դուսյա և Մարուսյա Վինոգրադովաների անունները, 500-ակայինների նախաձեռնողներ Մարիա Դեմչենկոյի, ողակավարուհի Մարինա Գնատենկոյի, տրակտորիստուհի-



ներ Պաշա Անգելինայի և Կովարդակի անունները, մյուս շքանշանակիր կանանց պանծալի շարքի անունները, մեր ամբողջ երկրում մեկ ու նրա սահմաններից դուրս, վորոտացին վորպես սոցիալիստական աշխատանքի կոչ: Աշխատանքի հերոս կանայք տիրապետում են իրենց գործի տեխնիկային, ֆաբրիկաների ու գործարանների դազգյահի մոտ: Նրանք պայքար են մղում հանուն կոլտնտեսային դաշտերի բարձր բերքերի: Նրանք գիտական ինստիտուտներում զինվում են թեորիայի գիտությամբ՝ իրենց ժողովրդին ծառայելու համար: Արվեստի ասպարեզում նրանք ծավալում են իրենց ձիրքերը՝ ի բերկրանք մեր ամբողջ երկրի: Նրանք ինքնաթիռներով գրոհում են երկինքը: Նրանք կառավարում են ծովում նավերը, սարն են բարձրացնում տրանսպորտը:

Միլիոնավոր կանայք պատրաստ են կրծքով պաշտպանել իրենց մեծ, սոցիալիստական հայրենիքը, պայքար մղել նրա զորության, պատվի ու փառքի համար:

Չկա աշխարհումս մի այլ երկիր, վորտեղ բանվորուհիներն իրենց մասին գրեն այնպես, ինչպես գրում են իրենց դիմումի

մեջ Խորհրդային Միության լավագույն ջուլհակները՝

«Մենք ամեն առավոտ հպարտության զգացմունքով կանգնում ենք մեր դազգյահների, վատերների, մեքենաների մոտ: Մենք աշխատում ենք հաստատապես ու վստահորեն՝ մեր աշխատանքի ամեն մի ժամը վարձատրվում է այն միլիոնավոր ապրանքներով, վորոնք վերադառնում են հենց մեզ մոտ, մեզ՝ մեր մեծ հայրենիքի աշխատավորների յերեխաներին:

Մենք մեր ժամանակի վոչ մի րոպեն չենք կորցնի: Չե՞ վոր մեզ մոտ աշխատանքի ամենակարճ օրն է ամբողջ աշխարհում: Յեվ մենք այդ աշխատանքային ժամանակվա ամեն մի ժամը, ամեն մի րոպեն լցնում ենք գիտակից ու ճշգրիտ աշխատանքով»:

Ջուլհակ Դուսյա Վինոգրադովան, աշխատելով 208 դազգյահի վրա, պլանը գերակատարեց այն պատճառով, վոր չգիտե շահագործում, չգիտե ստրկական աշխատանք, նա գիտե մի բան, վոր իր համար յերջանիկ կյանք է հյուսում: Այդ յերջանիկ, բերկրալից կյանքն ապահովում է նը-



րան խորհրդային Ստալինյան Սահմանադրությունը:

ԽՍՀՄ-ի կին — քաղաքացին հանգստի իրավունք ունի: ԽՍՀՄ-ի Սահմանադրության նախագծի 119-րդ հոդվածում ասված է՝

«Հանգստի իրավունքն ապահովվում է բանվորների ճնշող մեծամասնության համար աշխատանքային օրը կրճատելով—հասցնելով 7 ժամի, բանվորների ու ծառայողների համար սահմանելով տարեկան արձակուրդ, վորի ընթացքում պահպանվում է նրանց աշխատավարձը, աշխատավորներին սպասարկելու համար սանատորիաների, հանգստյան տների, ակումբների լայն ցանց տրամադրելով»:

Ծննդաբերությունից առաջ և հետո արձակուրդ ստանալու իրավունքը, ուշադրությունը դեպի կերակրող մայրը, բժշկական կոնսուլտացիաների ցանցը, հասարակական կազմակերպությունների ուշադրությունը դեպի մայր կինը, պետության հոգատարությունը նրա մասին, ստեղծում են կնոջ կուլտուրական աճմանը նպաստող պայմաններ: Առողջ յերեխա դաստիարակելու հո-

դաստիարակության անմիջական արդյունքն է նրա գիտությունների ամբողջ գումարի ընդարձակումը սանիտարիայի, առողջապահության, մանկավարժության ասպարեզում: Մեր մայրը գնալով ավելի կուլտուրական մայր է դառնում: Խորհրդային կանայք իրենց մասսայով այժմ արդեն վոչ մի ընդհանուր կետ չունեն տխուր անցյալի մոր հետ, յերբ ծամելիքը, կեղտոտ ծծակը մանկական կյանքեր հնձող անվերջ հիվանդությունների աղբյուր եյին հանդիսանում:

Միլիոնավոր կանանց հանգստի իրավունքը մեր որերին անխզելիորեն կապված է կուլտուրական հիմնարկների՝ ակումբների, կինոների, խրճիթ-ընթերցարանների ամենալայն ցանցի զարգացման հետ, հիմնարկներ, վորոնք կուլտուրապես հանգստանալու հնարավորություն են տալիս: Կինոները, թատրոնները, գրադարանները, թանգարանները լայնորեն բացված են աշխատավոր կնոջ առջև:

ԽՍՀՄ-ում կինը մյուս բոլոր քաղաքացիներին հավասար նյութական ապահովության իրավունք է վայելում աշխատունակությունը կորցնելու դեպքում:

Իր յերկրի քաղաքական կյանքում, այն



պայքարում, վորը մղվում է հանուն նրա տնտեսական զորության, հանուն պաշտպանունակության ամրացման, հանուն մեր բազմազգ ժողովրդի կուլտուրայի ծաղկման, հանուն սպորտի ու ֆիզիկական կուլտուրայի զարգացման— կինն ընթանում է իր հոր, ամուսնու, յեղբոր հետ հավասար:

Կինը քաղաքական հսկայական ուժ է դարձել: Գյուղխորհուրդների անդամների վերջին ընտրությունների ժամանակ ընտրվեց 330 հազար կին: Վորպես գյուղխորհուրդների նախագահներ աշխատում են 2500 կանայք, 101 կին յերկրի բարձրագույն կառավարական որգանի՝ Կենտգործկոմի անդամ է:

* * *

Ներկայումս չկա բուրժուական և վոչ մի յերկիր, վորտեղ ազգաբնակության աճի հարցն որակարգի մեջ դրված չլինի:

Համաշխարհային պատերազմի և տնտեսական ճգնաժամի պատճառով ազգաբնակության նվազելը բնական անհանգստություն է պատճառում բուրժուական յերկրների կառավարողներին:

Ամերիկայի Միացյալ Նահանգների նա-

խագահ Ռուզվելտը ժամանակին դիմել էր մայրերին մի կոչով, ապացուցելով նրանց, վոր յեթե կանայք խելքի չգան և չսկսեն բավական թվով նոր քաղաքացիներ ծնել, ապա անգլո-սաքսոն ցեղին սպառնում է դանդաղ, բայց անկանխելի «ինքնասպանություն»:

Այդ հարցն որակարգից չի իջնում նաև Ֆրանսիայում: Ֆրանսիական բուրժուազիան՝ վախեցած ազգաբնակության աճի անկումից, արդեն վաղուց ամեն տեսակ միջոցներ է ձեռք առնում ծննդաբերությունը «խրախուսելու» համար: Հիտլերը նույնպես կիրառում է բազմանդամ ընտանիքներին «խրախուսելու» այնպիսի մեթոդներ, ինչպիսիք են ամուրիների հարկը, անզավակների հարկը:

Բուրժուական յերկրներում գործում են աբորտի համար պատժող որենքներ: Սակայն այդ բոլոր միջոցները, վորոնց նպատակն է հարկադրել կնոջը ծնել, ցանկալի արդյունքներ չեն տալիս բուրժուազիային: Աղքատ, սոված կանայք, վորոնց աչքի առջև համառորեն ծառացած է գործազրկության ուրվականը, վորոնց ճնշում է անվստահությունը վաղվա նկատմամբ, չեն



ազդվում վոչ մի «ամենավեհ» կոչից: Կապիտալիստական յերկրներում կնոջ համար մայրության բեռը թունավորված է վաղվա յերկյուղով, յուրաքանչյուր ավելորդ բերանի ներշնչած յերկյուղով:

«Ցածր ծննդաբերությունն ազգային սպառնալիք է դառնում»— կոչում է «Ֆյոլկիշեր Բեոբախտեր» թերթը:

Ֆաշիստական կանանց կազմակերպության օրգանը ծնելու կոչ է անում կանանց՝ «Մենք աղաղակում ենք թե մենք առանց տերիտորիայի ժողովուրդ ենք, սակայն շուտով մենք կլինենք տերիտորիա առանց ժողովրդի...— գրում է «Ֆրաունվարտե» թերթը:

Մուսոլինին «ընտանիքի թագուհի» յե հռչակում կնոջը, սարքում է կանանց հանդիսավոր ստուգատեսներ, ցանկանալով փըքուն ֆրազներով խրախուսել ծննդաբերությունը, վորպեսզի ապահովի բավական քանակությամբ թնդանոթի միս:

Սակայն այդ բոլոր ջղաձգային ջանքերն ի վիճակի չեն լուծելու մայրության պրոբլեմը կապիտալիստական աշխարհում: Դեռ բավական չէ վողորմություն նետել բազմանդամ ընտանիքներին կամ հարկի յեն-

թարկել ամուսիններին, վորպեսզի ծննդաբերությունն ավելանա և յերեխաների մահացությունը կրճատվի:

Նույնիսկ բուրժուական այն յերկրներում, վորոնք իրենց օրենքներում ծննդաբերությունից առաջ և հետո արձակուրդ են նախատեսում, կինը չի կարող օգտվել մայր լինելու իրավունքից, վորովհետև չկա կապիտալիստական վորևէ յերկիր, վորտեղ կինն այդ ժամանակամիջոցին լիակատար աշխատավարձ ստանա և վորտեղ յերաշխիք լինի, վոր ձեռնարկատերը նրան նորից աշխատանքի կընդունի յերեխա ծնելուց հետո: Վոչ մի կապիտալիստական յերկրում աշխատավոր մայր կինը նյութական հնարավորություն չունի հղիությունից առաջ արձակուրդ ստանալու:

Մայրության պրոբլեմը լուծելի դարձավ միմիայն մեր խորհրդային յերկրում, հաղթանակած սոցիալիզմի յերկրում:

Ընկեր Ստալինն առաջավոր կոմբայնավարների խորհրդակցությանը հայտարարեց, թե մեզ մոտ ազգաբնակության տարեկան աճը կազմում է նույնքան, վորքան այնպիսի մի պետության ամբողջ ազգաբնակության թիվն է, ինչպիսին է Ֆինլանդիան:



Այդ անտարակույս, մեր մեծ խորհրդային յերկրի ազգաբնակության նյութական բարեկեցության աճման արդյունքն է, այն հոգատարության արդյունքը, վորը ցուցաբերում են մայր—կնոջը կուսակցությունը, խորհրդային կառավարությունը և հասարակական կազմակերպությունները:

Մեր յերկրի միլիոնավոր աշխատավորների յերջանիկ, բերկրալի կյանքը, մասսաների բարեկեցության աճումը, խորհրդային կառավարությանը հնարավորություն տվին պահպանելու կնոջը անժամանակ թառամելուց, ծերությունից, աբորտի կիրառման հետ կապված անբուժելի հիվանդություններից: Համաժողովրդական քննարկմանն առաջարկվեց «Աբորտներն արգելելու, ծննդկաններին տրվող նյութական օգնությունն ավելացնելու, բազմազավակ ընտանիքների համար պետական օգնություն սահմանելու, ծննդատների, մանկամսուրների ու մանկապարտեզների ցանցն ընդարձակելու» և այլն օրենքը:

Օրինագիծը ջերմ հավանություն գտավ ԽՍՀՄ-ի բոլոր աշխատավորների մոտ: Խորհրդային յերկրի կանայք այդ օրենքում տեսան ընկեր Ստալինի, կուսակցության ու

կառավարության կողմից իրենց ցուցաբերվող հոգատարության նոր արտահայտությունը:

«Աբորտներն արգելելու, ծննդկաններին տրվող նյութական օգնությունն ավելացնելու, բազմանդամ ընտանիքների համար պետական օգնություն սահմանելու, ծննդատների, մանկամսուրների ու մանկապարտեզների ցանցն ընդարձակելու» հունիսի 27-ի օրենքը, որի ընդունումը զուգադիպեց Ստալինյան Սահմանադրության նախագծի քննարկմանը, անխզելիորեն կապված է Սահմանադրության հետ:

Խորհրդային կինը,— մորը և յերեխային վերաբերող բոլոր ձեռնարկումներում, տեսնում է բանվորական պետության հոգատար ձեռքը: Միմիայն 1935 թվականին 200 միլիոն ռուբլի յե ծախսվել հղիության նպաստ տալու համար: 1936 թվականին մի միլիարդ ռուբլի յե հատկացված ընդարձակելու այն հիմնարկների ցանցը, վորոնց նպատակն է թեթևացնել կնոջ մայրությունը:

Աբորտն անթիվ աղետներ եր բերում կնոջը, ուստի մենք վողջունում ենք աբորտն արգելող օրենքը: Սակայն դրա հետ միա-



սին (առանց դրան աբորտի արգելումն արդյունք չեր տա), օրենքը նախատեսում է ավելի շատ նյութական օգնություն ցույց տալ մայր—կնոջը, եվ ավելի ուժեղացնել խորհրդային կառավարության հոգատարությունը մեր սոցիալիստական հայրենիքի աճող, ամրակուռ, կենսուրախ նոր սերնդի համար:

Հունիսի 27-ի օրենքի յերրորդ հոդվածը նախատեսում է մինչեվ 1939 թվականի հունվարի 1-ը կառուցել ու շահագործման հանձնել 11 հազար ծննդկան մահճակալ քաղաքներում և 32 հազար ծննդկան մահճակալ գյուղական վայրերում: Նույն օրենքի չորրորդ հոդվածում ասված է՝

«Մինչև 1939 թ. հունվարի 1-ը կրկնապատկել յերեխաների մսուրային մահճակալների գոյություն ունեցող ցանցը քաղաքներում, կոլտնտեսություններում, բանվորական ավաններում և յերկաթուղային տրանսպորտում, հասցնելով նրանց ընդհանուր քանակը 800 հազար մահճակալի»:

Գյուղական վայրերում մինչև 1939 թվականի հունվարի 1-ը մշտական մսուրներում մահճակալների թիվն ավելացվում է 500

հազարով և սեզոնային մսուրներում՝ 4 մի-
լիոնով։

Քաղաքներում, գործարանային ավաննե-
րում ու յերկաթուղային տրանսպորտում
առ 1-ը հունվարի 1939 թվականը գործող
մշտական մանկապարտեզների ցանցը հասց-
վում է մինչև 2100 հազար տեղի՝ գործող
ցանցի 700 հազար տեղի դիմաց։ Խորհտըն-
տեսություններում և գյուղական վայրերի
ձեռնարկություններում ու հիմնարկներում՝
մինչև 300 հազար տեղի՝ գործող ցանցի
130 հազար տեղի դիմաց։

1936 թվականի հունիսի 27-ի օրենքում
հատուկ ուշադրություն է նվիրված բազ-
մազավակ մայրերին։ Խորհրդային կառա-
վարությունն ուժեղացնում է բազմանդամ
ընտանիքներին ցույց տրվող ոգնությունը։

Ստալինյան հոգատարությունը մարդու
համար իր արտահայտությունը գտավ նաև
գյուղատնտեսական արտելի կանոնադրու-
թյան մեջ։ Այժմ հղի կոլտնտեսուհին ար-
ձակուրդ է ստանում ծննդաբերությունից
առաջ և հետո։ Կոլտնտեսականի ընտանի-
քում նոր յերեխայի ծնունդը բերկրալից
անցք է դառնում, իսկ բազմաչարչար գեղջ-
կուհի մոր պատկերը, վորն աշխատում էր



արևածագից մինչև արևամուտը, ապրում
էր աղքատության մեջ, կեղտում, ծնում էր
անտանելի տառապանքներով իր խրճիթի
նստարանի վրա, դոմում, դաշտում,—
ընկղմեց անդառնալի անցյալի մեջ։

Խորհրդային պետության կողմից մար-
դուն ցուցաբերվող բազմակողմանի հոգա-
տարությունը տարածվում է նաև յերեխա-
ների վրա։ Անսահման հնարավորություն-
ներ են ստեղծվել նրանց բոլոր ընդունա-
կությունների, ձիրքերի, տաղանդների
զարգացման համար։ Այնտեղ վորտեղ առաջ
կարող եյին առաջադիմություն ցույց տալ
միայն առանձին «բախտավորներ», այժմ
առաջադիմում են հարյուրավորները, հա-
զարավորները։ Յերեխայի վիճակը դադա-
րեց միայն մոր անձնական գործը լինելուց։
Հասարակությունը, պետությունը ստանձ-
նում են յերեխաների շոշափելի հոգատա-
րությունը։

* * *

Սահմանադրության 123-րդ հոդվածը խո-
սում է ԽՍՀՄ-ի քաղաքացիների իրավահա-
վասարության մասին՝ անկախ նրանց ազ-
գությունից ու ցեղից։

Խորհրդային հասարակակարգն ապահովում է ազգային հավասարությունը սոցիալիզմի համար մղվող պայքարում, ապահովում է ԽՍՀՄ-ի ժողովուրդների բարեկամության հետագա ամրացումը և դրանով իսկ մերկացնում է ֆաշիզմի «ռասսայական թեորիան», վորի նպատակն է ճնշել թույլ ազգությունների աշխատավոր մասսաներին:

Ցարական Ռուսաստանն իրավամբ ժողովուրդների բանտ է կոչվել: Արևելյան կնոջ վողբալի ասվերը լրացնում եր ճնշված ժողովուրդների անարգանքի ու տառապանքների շղթան: Աղջիկ աշխարհ գալուստն իսկ վշտի օր եր համարվում ընտանիքում:

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Հեղափոխությունը վոչնչացրեց այն իրավազրկության անարգանքը, վորը դարեր շարունակ ծանրացել եր Արևելյան կնոջ գլխին և բացեց նրա առջև յերջանիկ, բերկրալից կյանքի, սոցիալիստական շինարարությանը մասնակցելու բոլոր ուղիները: Սակայն հարկավոր եյին տարիներ, վորպեսզի կինը վերջնականապես ազատագրվեր նիստ ու կացի ֆեոդալական— ճորտատիրական կապանքների իշխանությունից: Արե-



վելյան ժողովուրդների խորհրդային որենքներով ազատ ու լիիրավ կինը դեռ յերկար ժամանակ ճորտացած եր մնում ընտանեկան կենցաղում: Բանվոր դասակարգի դիկտատուրային թշնամի բոլոր տարրերը կատաղի պայքար եյին մղում սոցիալիզմի դեմ, խորհրդային կառավարության այն որենքների դեմ, վորոնք ազատագրում են արևելյան կնոջը:

Բոլշևիկների կուսակցությունը կնոջը հոգատարությամբ, աստիճան առ աստիճան, տանում եր տնտեսական ազատագրման և կուլտուրական աճման սանդուխքով, մինչև վոր յերկրի սոցիալիստական ինդուստրացումը և կոլտնտեսային կարգերի հաղթանակն Արևելքի կնոջ համար ապահովեցին տղամարդկանց հետ լիակատար հավասարություն՝ կյանքի բոլոր ասպարեզներում:

Կաբարդինո— Բալկարյան ավտոնոմ մարզի «Պախդանասու» կոլտնտեսության ողակավար Բիլյա Միտոտիշխովան, հայտնի բերքատվության առաջավորների խորհրդակցությանն ասել եր՝

«Հիշելով ընկեր Ստալինի այն խոսքերը, թե կանայք կոլտնտեսության մեջ մեծ ուժ են, մենք 1935 թվակա-

նըն լավ աշխատեցինք կոլտնտեսային դաշտերում։

Իմ օղակում կա մի կին՝ ընկեր Հասանովյան, որն իր աշխորերի համար ստացավ 1224 փութ հացահատիկ... Կան նաև այնպիսի կոլտնտեսուհիներ, որոնք 1935 թվականին իրենց աշխորերի համար վաստակեցին 1700-ական փութ հացահատիկ...

Այժմ մեր կոլտնտեսությունը, մեր բրիգադը և իմ օղակն ապրում են կուլտուրական, ունևոր կյանքով... Սակայն ես կոլտնտեսային դաշտերի ռեկորդիստ չեմ միայն՝ ես պատրաստ եմ աշխատանքի ու պաշտպանության»։

ԽՍՀՄ-ի ժողովուրդների յեղբայրական բարեկամության մթնոլորտում, բուն ինտերնացիոնալիզմի մթնոլորտում, փուլ են գալիս բուրժուական ռեակցիոն հայացքների մնացուկները մանավանդ ընտանիքի, ամուսնության նկատմամբ։

Իսկ այնտեղ, որտեղ իր արյունալի իշխանությունն է հաստատել ֆաշիզմը, արվում է ամեն ինչ, որ կնոջը վերադարձնեն այն դրությանը, որով հռչակեցին իրենց միջնադարի մռայլ ժամանակները։



Գերմանիայի օրինակը կարող է ամենացայտուն կերպով հաստատել այդ։ Հիտլերը բացե ի բաց հայտարարում է, որ կինը չի կարող իրավահավասար լինել։

«Քաղաքականությունը և պրոֆեսիան կանանց համար չեն»—հայտարարում է «ֆյուրերը» («առաջնորդը»)։ Նրան ձայնակցում է պրոպագանդի մինիստր Հեբելսը՝ «Կնոջ ամենադժվար ու բարձրագույն կոչումն է՝ լինել կին և մայր»։ «Կինը պետք է պատկանի ընտանիքին»։ Ֆաշիստ Ֆեդերը հայտարարում է՝ «Կինը պետք է ազգի սպասուհին լինի և զինվորներ ծնի նրա համար, խնամի հոգնած մարտիկին»։

Նյուրնբերգի ֆաշիստական համագումարում Հիտլերը հայտարարեց՝ «Այժմ ես այստեղ չեյի լինի, յեթե չլինեյին Գերմանիայի կանայք»։

Սակայն Հիտլերի «ասպետական» զգացմունքները մերկացրեց գերմանական իրականությունը։ Կանայք պետք է բանվորական ամենաէժան ուժ մատակարարեն ռազմական գործարաններին և կինը սոսկ ծննդաբերական մեքենա յե։ Հղիության ժամանակ կինը Գերմանիայում չի կարող ավելի թեթև աշխատանքի անցնել։ Գերմա-

նիայի պրոֆեսիոնալ դեգրադացության 1933–1934 թվականների պաշտոնական հաշվետվությունները վկայում են, վոր հղի բանվորուհիներն աշխատում են մինչև վերջին օրը «վախենալով վորոշ գումար կորցնել աշխատավարձից»: Այդ առանձնապես վերաբերում է «ամուսնացած կանանց և գործազուրկների կանանց»: Դրա արդյունքն են հիվանդությունների աճումը և անժամանակ ծննդաբերությունները: «Մանկական հիվանդությունների բուժումը» ժուրնալի տվյալներով, 1935 թվականի հունիսից 2010 հազար հղիությունից ծնվում է միմիայն 910 հազար յերեխա, և դրանցից 54,7 տոկոսը մեռնում է ծծկեր հասակում:

Սանտիմենտալության՝՝ շղարշի տակ, վորի նպատակն է ազդել մայրության և ապահովված, ամուր ընտանիքի հասկանալի կարոտը քաշող գերմանացի կնոջ զգացմունքների վրա, Հիտլերը գերմանացի կանանց քշում է ռազմական ձեռնարկությունները, համակենտրոնացման ճամբար-



ները: Գերմանացի կանայք աղքատիկ վարձատրությամբ աշխատում են բազմաթիվ ռազմական ձեռնարկություններում, կազմելով այդ ձեռնարկություններում աշխատողների 70–ից մինչև 90 տոկոսը, ընդ վորում բանվորուհու աշխատավարձը հազիվ է հասնում աշխատող տղամարդու աշխատավարձի 50–60 տոկոսին:

Ստալինյան Սահմանադրության 121–րդ հոդվածում գրի յե առնված ԽՍՀՄ–ի բոլոր քաղաքացիների կրթության իրավունքը: Ֆաշիզմը զրկում է կանանց այդ իրավունքից, դուրս քշելով նրանց համալսարաններից ու միջնակարգ դպրոցներից: Մինչդեռ խորհրդային յերկրում ուսանողուհիների թիվն ավելանում է, ֆաշիստական Գերմանիայում հատուկ վորոշմամբ դադարեցված է կանանց ընդունելությունը բարձրագույն ուսումնական հաստատությունները: Գերմանացի կանանց, վորոնք շատ զոհեր են տվել կրթություն ստանալու համար՝ կին բժիշկներին, փաստաբաններին, պրոֆեսորներին, այժմ զրկում են աշխատանքից: Ֆաշիստական Գերմանիայում դպրոցն ավարտած աղջիկները վոչ մի հեռանկար չունեն: Այն միակ հարցը, վորով

ապրում են տասնյակ հազարավոր այդպիսի աղջիկներ, հետևյալն է՝ «որտե՞ղ ապաստան գտնեմ, որտե՞ղ տեղավորվեմ, որ մի պատառ հաց վաստակեմ»: Նույնիսկ գերմանական «Կյոն» ժուռնալը գրում է՝ «Ցավալի յե տեսնել, թե ինչպես են կորչում տաղանդները, ձիրքերը, ընդունակությունները»:

Ստալինյան Սահմանադրությունը խորհրդային կանանց համար ապահովում է ոչ միայն անվճար ուսուցում, միջնակարգ ու բարձրագույն կրթություն, այլև ամեն մի պրոֆեսիայի ընտրություն՝ համաձայն իրենց ընդունակությունների ու հակումների:

Կնոջ իրավունքների նկատմամբ, նրա մարդկային արժանապատվության նկատմամբ ծաղր ու ծանակ է ամուսնության ֆաշիստական օրենսդրությունը՝ նա արգելում է ամուսնությունները գերմանացիների և «ոչ արիացիների» միջև: Նա խայտառակության սյունին է գամում կնոջը, յեթե վերջինս մարդու յե գնում «ոչ արիացու»: Այդ բարբարոսական օրենքը խախտող բոլոր անձանց պատժում են դատարանով, առանց կանգ առնելու նույնիսկ



բարբարոսական միջոցի՝ ստերիլացման առջև, որը կնոջն ընդմիշտ զրկում է մայր դառնալու հնարավորությունից:

Այն տղամարդկանց, որոնց կանայք «արիական» ծագում չունեն, զրկում են աշխատանքի իրավունքից: Հազարավոր հարկադրյալ ամուսնալուծություններ սովի ու աղքատության են դատապարտում բաժանված ծնողների թողած յերեխաներին: Իսկ ցեղային, ազգային ատելության հրահրումն ինքը հանդիսանում է այն միջոցներից մեկը, որով գերմանական ֆաշիզմը ռազմական հարձակումներ է պատրաստում մյուս ժողովուրդների վրա, պատրաստում է մի պատերազմ, որի մեջ ուզում է քաշել Հիտլերը գերմանական ժողովրդին և որի ծանրությունը նախ և առաջ ընկնելու յե գերմանական մայրերի, գերմանական կանանց ուսերին:

* * *

ԽՍՀՄ-ում աշխատավոր կանայք, ամբողջ բանվոր դասակարգի հետ միասին, Լենինի-Ստալինի կուսակցության ղեկավարությամբ, իրավահավասարություն նվաճեցին իրենց համար, այդ իրավահավա-

սարությունը ձեռք բերին պայքար մղելով հեղափոխական շարքերում։ Նրանք փողոց էին դուրս գալիս հրացանը ձեռներին իրենց յեղբայրների, հայրերի ու զավակների հետ միասին։ Նրանք բարիկադներ էին կառուցում 1905 և 1917 թվականներին, մասնակցում էին ցարիզմի իշխանության, կապիտալիստների ու կալվածատերերի իշխանության տապալմանը, մարտնչում էին քաղաքացիական պատերազմի ճակատներում սպիտակ գվարդիական գեներալների ու ինտերվենտների դեմ, վերականգնում էին քայքայված տնտեսությունը, կառուցում էին նոր քաղաքներ, գործարաններ, էլեկտրակայաններ, խորհտնտեսություններ, կոլտնտեսություններ, դպրոցներ, կուլտուրայի պալատներ։ Նրանք համաքայլ են ընթանում ամուսինների, յեղբայրների ու զավակների հետ միասին՝ հարվածայինների, ստախանովականների շարքերում։

Այդ օրինակով Իսպանիայի հերոս կանայք, իրենց հայրերի ու յեղբայրների հետ միասին, քաղաքացիական պատերազմի ճակատներում այժմ մարտնչում են ֆաշիստ խռովարարների դեմ։ Պասիոնարիայի պատկերը՝ ազատության և ժողովր-



դի յերջանկության համար պայքարող այդ անձնուրաց մարտիկի պատկերը, բարձրացնում է հանրապետական ջոկատների ուժերը։ Ե՛վ ճակատի առաջապահ դիրքերում, և՛ պարլամենտում, Պասիոնարիայի կրակոտ խոսքերը բորբոքում են հանրապետության պաշտպանների սրտերը։

Մեր յերկրում անդառնալիորեն թաղված է կնոջ դարավոր անհավասարությունը։

Ամբողջ աշխարհի կանանց հայացքները ուղղված են Խորհրդային Միության վրա։ Ստալինյան Սահմանադրությունը խորապես թափանցում է բուրժուական յերկրների կանանց գիտակցության մեջ։

Ամբողջ աշխարհում միլիոնավոր կանայք ողջունում են Ստալինյան Սահմանադրությունը, վորն ուղեցույց աստղ է հանդիսանում նոր, պայծառ, ունևոր և կուլտուրական կյանքի համար նրանց մղած պայքարում։

ԽՍՀՄ-ի նոր Սահմանադրությունն ամենալիակատար չափով արտահայտում է ստալինյան հոգատարությունը կնոջ համար, նրա բոլոր ուժերի, ձիրքերի, տաղանդների ծաղկման համար։

Ստալինյան Սահմանադրությունը հան-

դիմանում է սոցիալիստական հասարակության համար մեր կուսակցության և բոլոր աշխատավորների մղած բազմամյա պայքարի արդյունքը այն հասարակության համար, վորտեղ կինը բոլոր տեսակետներից հավասար է տղամարդուն:

Սիրով, փառքով, պատվով, ընկերական հարգանքով է շրջապատված կինը Խորհրդային Միության մեջ:

Խորհրդային կինն անհուն սիրով, անսահման նվիրվածությամբ է պատասխանում իր հայրենիքին, իր կուսակցությանը, իր առաջնորդին, բարեկամին, ուսուցչին՝ Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինին:

Հայրենիք, կուսակցություն, Ստալին— այս խոսքերն են լցնում խորհրդային կանանց սրտերը և վոգեշնչում են նրանց՝ շարունակելու պայքարը կոմունիզմի համար:

Յեվ խորհրդային Միության ազատագրված կինն անհուն ատելությամբ է լցված դեպի ֆաշիզմի շունը դարձած Տրոցկին և տրոցկիստները, դեպի հակահեղափոխական աջ ոպոզիցիայի թափթփուկները, վորոնք կատարելով ֆաշիզմի ցանկությունները, կամենում են մեր յերկրում վերա-



կանգնել կապիտալիստական կարգերը և հետ դարձնել այն կապանքները, վորոնցով շղթայված եր նա մինչ սոցիալիստական հեղափոխությունը:

Սոցիալիստական հասարակակարգ կառուցող մարտիկների շարքերում գտնվող խորհրդային աշխատավոր կինն առաջին գծերում կլինի նաև խորհրդային հայրենիքի պաշտպանության գործում: Խորհրդային կինը սոցիալիզմի արյունարբու թշնամի ֆաշիզմի և նրա վարձկան հակահեղափոխական տրոցկիստների, լրտեսների, դիվերսանտների կողմից մեր դեմ պատրաստվող պատերազմի ժամանակ՝ առաջին շարքերից կդնա մարդկության այդ թշնամիներին վոչնչացնելու համար:

Ճորտության և ստրկության կապանքները թոթափած կինը խորհրդային յերկրում գիտե պաշտպանել իր իրավունքները, ձեռք բերված իր ուրախ և բերկրալից կյանքը, վորը ստեղծված է մեր մեծ առաջնորդ սիրելի Ստալինի ղեկավարությամբ, վորոնք արձանագրված են աշխատավոր մարդկության պայքարի դարաշրջանը կազմող Ստալինյան Սահմանադրության մեջ:

Կ(բ)Կ ԿԿ հրատարակչություն—Ժեռհիր. Հայաստան

Շարունակվում է 1937 թ.
բաժանորդագրությունը

# „ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ“

Լույս է տեսնում ամիսը 2 անգամ

Հ Կ (բ) Կ Կենտկոմի կուսպրոպագանդայի
և ագիտացիայի բաժնի հրատարակություն

ԲԱԺՆԵԳԻՆԸ՝

12 ամիսը . . . 6 ռուբ.
6 » . . . 3 »
3 » . . . 1 ռ. 50 կ.

Առանձին համարը՝ 25 կոպ.

Բաժանորդագրվելու համար դիմել՝

„Սոյուզպեչատ“-ի քաղաքային, շրջանային
բյուրոներին և փոստի բաժանմունքներին։